ըը, իսկ հանքագործները պատուիրակութիւն մը ղրկելով Լէօն Պլումի, ազդարարեցին թէ տակաւին գոհացում չեն ստացած իրենց աշխատավարձքի մասին: Բայց խոստացան համբերել, մինչեւ որ կառավարութիւնը կարգադրէ հանքերու ազգայնացման խնդիրը:

*** Սիթրօէնը, որ ամէնէն վերջը միացաւ գործադուլին, իր բոլոր ճիւղերով (22,000 բանուոր), դեռ չէր համաձայնած մինչեւ երէկ ուշատեն եւ բանուորները պատրաստուած էին կիրակին ալ գործարաններու մէջ անցընել: Ուրիշ հաստատութիւններ ալ հաշուելով, 40,820 բանուորները կը շարունակեն գործադուլը:

Գործարանատէրներու ներկայացուցիչները ժողով գումարելով, պատուիրակութիւն մը ղրկեցին աշխատանքի նախարարին, գանգատելով թէ կը շարունակուի գործարաններու գրաւումը եւ ազդու միջամտութիւն խնդրեցին: Դաւլիճը, որ իր վերջին նիստը գումարեց ուրբաթ օր, ամէն միջոց կը փորձէ լուծելու տագնապը, իր հրաժարումէն առաջ:

## ՆՈՐ ԴԷՊՔԵՐ ՊԱՂԵՍՏԻՆԻ ՄԷՋ

Երուսաղէմէն կը հեռագրեն թէ արաբական հրոսախումբեր կը շարունակեն յարձակումներ գործել երկրին բոլոր մասերուն մէջ: Ծանր ընդհարումներ պատահեցան ցուցարարներուն եւ զօրքին միջեւ: Պահակախումբ մը, որ կը պաշտպանէր Երուսաղէմ - Հայֆա երկաթուղին, յարձակում կրեց զինեալ հրոսախումբի մը կողմէ, թէեւ արգիլուած է մօտենալ գծին, մինչեւ 50 մեթր հեռաւորութեամբ: Զինուորները պատասխանեցին գնդացիրներով, սպաննելով քանի մը հոգի: Ռամլէի մէջ արաբ ցուցարարները կրակ բացին նամակատան պահակներուն վրայ, հրձիգ ռումբեր նետելէ յետոյ: Զինուորները պատասխանեցին հրացանաձգութեամբ, վիրաւորելով քանի մը հոգի: Ռումբեր նետուեցան Հայֆայի եւ Եաֆայի մէջ, ոստիկանութեան պահականոցին վրայ: Հեռագրի եւ հեռաձայնի գիծերը կտրուած են շատ մը վայրերու մէջ: Երուսաղէմի մէջ դադարման դատապարտուեցան քանի մը արաբական եւ հրէական թերթեր, որոնք գրգռիչ հրատարակութիւններ ըրած էին: Անգլ. ջոկատ մը յարձակում կրեց Նապլուսի եւ Ճէնինի միջեւ: Զինուորները կրակ բացին, սպաննելով երկու Արաբներ եւ վիրաւորելով չորս հոգի: Կը կարծուի թէ շատ աւելի խիստ միջոցներ ձեռք պիտի առնուին քանի մը օրէն:

Հեռագրի մը համաձայն, ամէնէն ծանր կացութիւնը կը տիրէ Եաֆայի մէջ: Ուրբաթ օր հինգ ռումբեր պայթեցան Աքեայի մէջ: Արաբ մը զոհ գնաց իր փոխադրած ռումբին, որ պայթած էր ժամանակէն առաջ:

## Անգլիոյ եւ Իտալիոյ մերձեցումը

Օրուան կարեւոր խնդիրն է Անգլիոյ եւ Իտալիոյ մերձեցումը: Անգլ. դահլիճը անջի օր գրաղեցաւ այն խօսակցութեամբ զոր ունեցած էր Պ. Իտըն, Լոնտոնի իտալական դեսպանին հետ: Գլխաւոր դժուարութիւնը պատիժներու խնդիրն ըլլալով, անգլիական եւ ֆրանսական կառավարութիւններըամէն միջոց կը փորձեն, միջին ճամբայ մը գտնելու համար, Ազգանողովին գումարումէն առաջ (15 յունիս):

Երկու մայրաքաղաքներուն մէջ ալ կը խոստովանին թէ այլեւս անօգուտ է պատժական տնօրինութեանց շարունակութիւնը: Բայց ղանոնք վերցնելէ առաջ, անհրաժեշտ կը համարուի ձեւ մը գտնել եւ ապահովութիւն ներշնչել այն պետութեանց որոնք մտահոգութեան մատնուած են, Ազգանողովին անանկութեան առթիւ:

Հռոմի անգլիական եւ ֆրանսական դեսպանները ուրբաթ օր կարեւոր տեսակցութիւններ ունեցան Իտալիոյ արտաքին նախարարութեան խորհրդականին հետ:

Արժանթինի կառավարութիւնը առաջարկեց արտակարգ նիստի հրաւիրել Ազգերու Դաշնակցութեան ընդհ. ժողովը, ելք մը գտնելու համար տիրող տագնապին (եթովպական հարց եւ պատժական տնօրինութիւններ):

## ՑԱՆԱՁԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՊԵԼԺԻՈՅ ԹԱԳԱՒՈՐԸ խորհրդակցութեան հրաւիրեց համայնավար կուսակցութեան ընդհ. քարտուղարը, նոր դահլիճին կազմութեան համար: Առաջին անգամ է որ այսպիսի դէպք մը կը պատահի արքայական երկրի մը մէջ: Տակաւին ելք չէ գտնուած:

ՄԱՐՍԷՅԼԻ Քառէր գործարանին բանուորները, որոնց մէջ Հայեր ալ կան, գործադուլ հռչակեց, յաւելում եւ ուրիշ բարեփոխումներ պահանջելով:

ՍՈՒՐԻՈՅ մասին յօդուած մը հրատարակելով, «Իւմանիթէ» կը պահանջէ որ Լէօն Պլումի կառավարութիւնը անմիջապէս գոհացնէ Արաբներու պահանջները: Այս առթիւ կը շեշտէ թէ «Ժողովրդական Ճակատին յաղթանակը խանդավառութեամբ ողջունուեցաւ Պէյրութի, Դամասկոսի եւ Հալէպի մէջ»:

ԱՆԳԼԻՈՅ ԹԱԳԱՒՈՐԻՆ ԹԱԳԱԴՐՈՒԹԻՒՆԸ պիտի կատարուի 1937 մայիս 12ին: Այս որոշումը ժողովուրդին հաղորդուեցաւ մունետիկներու միջոցաւ, աւանդական բոլոր արարողութիւններով:

ԸՆԿԵՐՎԱՐԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ տարեկան ընդհ. ժողովը բացուեցաւ երէկ, շաբաթ: Պիտի տեւէ չորս օր:





Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN)

17. Rue Damesme. PARIS (13)